Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11 ՄԱՅԻՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





---

*Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։*

---

# ՀՐԱՄԱՆ
## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐԻ

**1 Մայիսի 1947 թ.  № 21  քաղ. Մոսկվա**

*Ընկեր զինվորնե՛ր և նավաստինե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր։ Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր։*

*Այսօր սովետական ժողովուրդը և նրա հետ միասին Սովետական Բանակն ու Ռազմա-Ծովային Նավատորմը տոնում են Մայիսի Մեկի Օրը՝ աշխատավորների միջազգային տոնը։*

*Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը Մայիսի Մեկը դիմավորում են մարտական և քաղաքական ուսման պայմաններում, հաջողությամբ յուրացնելով Հայրենական Մեծ Պատերազմի փորձը և տիրապետելով ստալինյան ռազմագիտությանը։*

*Սովետական ժողովուրդը Մայիսի Մեկը*

տոնում է աշխատանքային և քաղաքական բարձր վերելքի խրախուսության մեջ: Ամբողջ երկրում համաժողովրդական սոցիալիստական մրցություն է ծավալվել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը արժանավայել կերպով դիմավորելու համար:

Արդյունաբերության և տրանսպորտի բանվորները, ինժեներներն ու տեխնիկները անձնվիրաբար պայքարում են հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, արտադրության առաջավոր մեթոդների համար, ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման տեմպերը բարձրացնելու համար:

Սովետական գյուղացիությունը զինված հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին․ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան Պլենումի պատմական որոշումով, աննախընթաց խանդավառությամբ պայքար է ծավալել բարձր բերքի համար, բնակչությանը՝ պարենամթերքի և թեթև արդյունաբերությանը՝ հումքի առատություն ստեղծելու համար, սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վե-



րականգնման և հետագա զարգացման համար:

Մեր ամբողջ ժողովուրդը կոմունիստական պարտիայի, մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, հաստատակամորեն հաղթահարում է հետպատերազմյան դժվարությունները և խաղաղ աշխատանքի ճակատում տանում է հաղթանակ հաղթանակի ետևից:

Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, դեմոկրատական կայուն խաղաղության համար, ժողովուրդների բարեկամական համագործակցության ամրապնդման համար մղվող նրա ակտիվ և հետևողական պայքարը հավանություն և պաշտպանություն են գտնում աշխարհի պրոգրեսիվ ուժերի կողմից:

Մեր Զինված Ուժերը պարտավոր են ապահովել սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը և Սովետական Միության պետական շահերը: Այդ խնդիրը հաջողությամբ կատարելու համար Զինված Ուժերը պետք է շարունակ պահպանեն իրենց մարտական պատրաստությունը:

Զինվորները և նավաստիները, սերժանտները և ավագները պարտավոր են

բարեխղճորեն ուսումնասիրել ռազմական գործը, որպեսզի առաջիկայում ևս լինեն հմուտ ռազմիկներ։

Գեներալները, ադմիրալները և սպաները պետք է կատարելագործեն իրենց ռազմական գիտելիքները և է՛լ ավելի շատ ու ավելի լավ աշխատեն ստորադասյալների հետ, սովորեցնեն նրանց և դաստիարակեն զինվորական պարտքը անթերի կերպով կատարելու ոգով։

Մոտիկ օրերս սկսվում է զորքերի մարտական պատրաստության կարևորագույն էտապը՝ ամառային ուսուցման ժամանակաշրջանը։ Այդ ժամանակաշրջանում Բանակը, Ավիացիան և Նավատորմը պետք է նոր հաջողություններ ձեռք բերեն մարտական և քաղաքական պատրաստության մեջ և գերազանց լուծեն իրենց առաջ դրված խնդիրները։

Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին սովետական ռազմիկները հերոսության, մարտական վարպետության և Հայրենիքին անձնվիրաբար ծառայելու օրինակներ ցույց տվին։ Այժմ, խաղաղ ժամանակ Զինված Ուժերի անձնակազմը պետք



է պատերազմի տարիների նման բարձր պահի սովետական ռազմիկի արժանապատվությունը, լինի կազմակերպվածության և կարգապահության օրինակ, իր բոլոր գիտելիքները և ուժերը նվիրի մեր Հայրենիքի բարօրությանը։

Ընկեր զինվորնե՛ր և նավաստինե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր։

Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր։

Բանակի և Նավատորմի շարքերից զորացրված ռազմիկնե՛ր։

Ողջունում և շնորհավորում եմ ձեզ Մայիսի Մեկի օրվա առթիվ։

Ի նշանավորումն աշխատավորների միջազգային տոնի Հրամայում եմ.

Այսօր, Մայիսի 1-ին, մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ինչպես նաև Կալինինգրադում, Լվովում, Խաբարովսկում, Վլադիվոստոկում, Պորտ-Արթուրում և հերոս-քաղաքներ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստոպոլում և Օդեսայում սալյուտ տալ հրետանային քսան համազարկով։

Կեցցե՛ն Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։

Կեցցե՛ մեր Սովետական Կառավարությունը։

Կեցցե՛ մեր Կոմունիստական Պարտիան։

Կեցցե՛ն սովետական հերոս ժողովուրդը և մեր հզոր Հայրենիքը։

Կեցցե՛ Մեծ Ստալինը։

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ
ՄԻՆԻՍՏՐ ԲԱՆԱԿԻ ԳԵՆԵՐԱԼ

**Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆ**



# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ

*Մայիսի 9-ի օրը մարդկության պատմության մեջ ամենանշանավոր դատաներից մեկն է։ Այդ օրը ֆաշիստական ագրեսիայի որջում՝ Բեռլինում գերմանական գլխավոր հրամանատարության ներկայացուցիչներն ստորագրեցին հիտլերյան Գերմանիայի անվերապահ կապիտուլյացիայի ակտը։ Հաղթանակեց սովետական ժողովրդի արդար գործը, հանուն որի 1941 թվականի հունիսի 22-ից մինչև 1945 թվականի մայիսի 9-ը՝ 1417 օր, սովետական հերոս ժողովուրդն արիաբար մարտնչում էր գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ, պաշտպանելով մեր մեծ Հայրենիքի անկախությունը, ազատությունն ու պատիվը։ 1417 օր ու գիշեր որոտում էին թնդանոթները, ձարճատում էին գնդացիրներն ու ավտոմատները, երկինքը բռնված էր ինքնաթիռների հռնդյունով։*

*Սովետական ժողովուրդը հիտլերյան Գերմանիայի դեմ իր արդարացի պատերազ-*

մում ո՛չ միայն պաշտպանում էր Սովետական Հայրենիքի պատիվը, ազատությունն ու անկախությունը, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի վիթխարի նվաճումները, այլև պայքարում էր բոլոր ժողովուրդների ազատության ու պատվի համար, ֆաշիստական ստրկությունից և այդ ստրկության սպառնալիքից նրանց ազատագրելու համար, առաջադեմ մարդկության կյանքի և լավագույն ապագայի համար։

Ժողովուրդները սրտատրոփ սպասում էին պատերազմների պատմության մեջ մեծագույն ճակատամարտերի վախճանին, մեծ հաղթանակի օրվան, երազում էին խաղաղության հաստատումն ամբողջ աշխարհում։

Եվ ահա 1945 թվականի մայիսի 9-ին ընկեր Ստալինը դիմելով մեր Հայրենիքի ժողովուրդներին, ասաց.

«Ընկերնե՛ր, հայրենակիցնե՛ր և հայրենակցուհինե՛ր։ Հասավ Գերմանիայի դեմ հաղթանակի մեծ օրը։ Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների զորքերի կողմից ծնկի բերված ֆաշիստական Գերմանիան իրեն պարտված ճանաչեց և անվերապահ կապիտուլյացիա հայտարարեց...



...Հայրենական Մեծ Պատերազմն ավարտվեց մեր լիակատար հաղթանակով։ Պատերազմի ժամանակաշրջանը Եվրոպայում վերջացավ։ Սկսվեց խաղաղ զարգացման ժամանակաշրջանը...

...Շնորհավորում եմ ձեզ՝ հաղթանակի առթիվ, իմ թանկագին հայրենակիցնե՛ր և հայրենակցուհինե՛ր»։

Ամբողջ աշխարհով մեկ տարածվեցին Ստալինի խոսքերը, որոնք բոլոր ազատասեր ժողովուրդների սրտերը լցնում էին անսահման երկրպագությամբ և օրինական հպարտության զգացմունքով։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը 1945 թվականի մայիսի 8-ին որոշում ընդունեց, որում ասված է.

«Ի նշանավորումն գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ Սովետական ժողովրդի Հայրենական Մեծ Պատերազմի հաղթական ավարտման և Կարմիր Բանակի տարած պատմական հաղթանակների, որոնք պսակվեցին անվերապահ կապիտուլյացիա հայտարարած հիտլերյան Գերմանիայի լիակատար ջախջախմամբ, սահմանել, որ մայիսի

9-ը հանդիսանում է համաժողովրդական ցնծության օր՝ Հաղթանակի Տոն»:

Այդ օրը մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան Հայրենիքի անունից 1000 հրանոթի հրետանային 30 համազարկով ողջունեց հաղթանակ տարած սովետական քաջարի զորքերին: Դա գերմանական զավթիչների դեմ մղվող Հայրենական Մեծ Պատերազմի վերջին համազարկն էր, որն ազդարարեց Սովետական Միության պատմական հաղթանակի մասին:

Սովետական Միության և նրա քաջարի Բանակի վճռական դերը ֆաշիստական Գերմանիայի դեմ ընդհանուր հաղթանակ տանելու գործում ընդունում է ողջ առաջադեմ մարդկությունը, բոլոր ազնիվ մարդիկ: Հիտլերյան Գերմանիայի դեմ մեր տարած մեծ հաղթանակն է՛լ ավելի բարձրացրեց Սովետական Միության հեղինակությունն աշխարհի բոլոր ժողովուրդների աչքում և միջազգային ասպարեզում:

***

Երկրորդ համաշխարհային պատերազմը հանդիսանալով ժամանակակից մոնոպոլիստական կապիտալիզմի բազայի վրա հա-



մաշխարհային տնտեսական և քաղաքական ուժերի զարգացման անխուսափելի հետևվանքը, իր բնույթով տարբերվում է առաջին համաշխարհային պատերազմից: Ընկեր Ստալինը մատնանշում է, որ առանցքի տե-
րությունների դեմ մղված երկրորդ համաշ-
խարհային պատերազմը իր սկզբից ընդու-
նեց հակաֆաշիստական-ազատագրական
բնույթ: Սովետական Միության մտնելը
պատերազմի մեջ ընդդեմ ֆաշիստական
զավթիչների՝ ուժեղացրեց երկրորդ հա-
մաշխարհային պատերազմի հակաֆաշիս-
տական ու ազատագրական բնույթը:

Գերմանա-ֆաշիստական զավթիչներն սկըսելով համաշխարհային պատերազմը, նպատակ էին դրել ֆաշիստական տիրապետություն հաստատել ամբողջ աշխարհում:

Առանց լուրջ դիմադրության հանդիպելու զավթելով Ֆրանսիան, Բելգիան, Դանիան, Նորվեգիան, Լեհաստանը և ուրիշ երկրներ, հավաքելով եվրոպական համարյա բոլոր երկրների ռեսուրսները, հիտլերյան Գերմանիան 1941 թվականի հունիսի 22-ին ուխտադրժորեն հարձակվեց Սովետական երկրի վրա: Գերմանա-ֆաշիստական զավթիչները հույս ունեին, թե «կայծակնային հարվա-

ծով» մեկ ու կես-երկու ամսում կջախջախեն Կարմիր Բանակը, կջլատեն Սովետական Միությունն ու կզավթեն մեր ամբողջ երկիրը։

Դեռ պատերազմի առաջին օրերին ընկեր Ստալինը մատնանշեց, որ մեր Հայրենիքի վրա կախվել է լուրջ վտանգ, որ մեր երկիրը կռվի է դուրս եկել իր ամենաոխերիմ թշնամու՝ գերմանական ֆաշիզմի դեմ և կոչ արեց ժողովրդի բոլոր ուժերը գործի դնել թշնամուն ջախջախելու համար։

Լենինի-Ստալինի պարտիան հանդես եկավ որպես սովետական ժողովրդի ազատագրական պատերազմի կազմակերպիչն ու ղեկավարը ինչպես ռազմաճակատում, նույնպես և թիկունքում։

Պաշտպանողական համառ մարտերում սովետական զորքերը 1941 թվականի ամառը ծանր հարվածներ հասցրին հակառակորդի զորքերին, ջախջախեցին հիտլերյան լավագույն դիվիզիաները և ձախողեցին գերմանական գլխավոր շտաբի մշակած «կայծակնային պատերազմի» անփառունակ պլանը։

Ընկեր Ստալինը նշեց գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում սովետական ժողովրդի հաղթանակի ծրագի-



րը։ Իրականացնելով ստալինյան հանճարեղ ստրատեգիական պլանը, Կարմիր Բանակը 1941 թվականի վերջերին Մոսկվայի տակ ջախջախեց գերմանական զորքերին և ձախողեց Մոսկվան գրավելու հիտլերյան խելահեղ պլանը։

1941-1942 թվականի ձմեռը սովետական զորքերը հաջող հարձակողական մարտեր ծավալեցին հակառակորդի դեմ։

1942 թվականի ամառը հիտլերյան հրամանատարությունը, օգտվելով Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, իր բոլոր ռեզերվները հավաքեց սովետական-գերմանական ռազմաճակատի հարավային հատվածում և անցավ նոր հարձակման, հասնելով մինչև Ստալինգրադ ու Կովկասի նախալեռները, գլխավոր նպատակ ունենալով արևելքից շրջանցել ու գրավել Մոսկվան։

Սովետական ռազմիկները հանդես էին բերում չտեսնված դիմացկունություն, քաջություն և հերոսություն, պաշտպանելով Լենինգրադը, Սևաստոպոլը, Ստալինգրադը, Կովկասը։ Ծանր մարտերում սովետական

ռազմիկներն ավելի էին կռվում, կատարելագործում էին իրենց ռազմական վարպետությունը և ուժեղացնում թշնամուն հասցվող հարվածները։

Պաշտպանողական մարտերում ոչնչացնելով հակառակորդի մեծաքանակ տեխնիկան և կենդանի ուժը, սովետական զորքերը Ստալինգրադի տակ շրջապատեցին և ոչնչացրին գերմանական երկու ընտիր բանակները։

Ստալինգրադյան ճակատամարտը դարձավ գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտը։ Ստալինգրադի տակ և Կովկասի նախալեռներում ջախջախվեցին Գերմանիայի դաշնակիցների՝ ռումինական, իտալական և հունգարական բանակները։

1943 թվականի ամառը հակառակորդը Կուրսկի ուղղությամբ նոր հարձակում ձեռնարկեց, փորձելով վերցնել նախաձեռնությունը։ Սակայն Կուրսկի մեծ ճակատամարտում հիտլերյան բանակները ծանր պարտություն կրեցին։ Սովետական Բանակն անցավ հարձակման և կատաղի մարտերում ջախջախելով ու հետապնդելով գերմանական զավթիչներին՝ Վոլգայի ու Դոնի շրջանից հասավ մինչև Դանուբն ու Էլբայի ափերը, ծնկի



բերեց հակառակորդին և Հաղթանակի դրոշը բարձրացրեց Բեռլինի վրա։

Իր այդ հաղթարշավի ընթացքում Սովետական Բանակը ոչնչացնելով ֆաշիստական «նոր կարգը Եվրոպայում», Եվրոպայի բազմամիլիոն ժողովուրդներին ազատագրեց հիտլերյան ստրկության լծից և հնարավորություն տվեց այդ ժողովուրդներին իրենց երկրում հաստատելու ցանկալի դեմոկրատական կարգերը։

***

Ո՞րն է գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի տարած փայլուն հաղթանակի պատմական նշանակությունը, ի՞նչ է նշանակում այդ հաղթանակը։

«Մեր հաղթանակը նշանակում է, ամենից առաջ, որ հաղթեց մեր սովետական **հասարակական** կարգը, որ սովետական հասարակական կարգը հաջողությամբ բռնեց քննությունը պատերազմի կրակի մեջ և ապացուցեց իր լիակատար կենսունակությունը» (Ստալին)։

Հենց սոցիալիստական հասարակարգը, տնտեսության սոցիալիստական սիստեմն է, որ մեր ժողովրդին տվեց անհաղթահարելի

ում, հնարավոր դարձրեց այն հզոր տնտեսական հիմքի ստեղծումը, որն ապահովեց մեր Հայրենիքի պաշտպանությունը, ռազմաճակատի և թիկունքի մատակարարումը հաղթանակի համար անհրաժեշտ ամեն ինչով։

Ստալինյան հնգամյակները Սովետական Միությունը դարձրին հզոր ինդուստրիալ երկիր, բարձրացրին մեր երկրի պաշտպանունակությունը, զինեցին Սովետական Բանակը առաջնակարգ մարտական տեխնիկայով։

Արդեն պատերազմի նախօրյակին՝ 1940 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվում էր 15 միլիոն տոննա չուգուն, մոտ չորս անգամ ավելի, քան 1913 թվականին, 18 միլիոն 300 հազար տոննա պողպատ, չորս և կես անգամ ավելի, քան 1913 թվականին, 166 միլիոն տոննա քարածուխ, հինգ և կես անգամ ավելի, քան 1913 թվականին, 31 միլիոն տոննա նավթ, երեք և կես անգամ ավելի, քան 1913 թվականին, 38 միլիոն 300 հազար տոննա ապրանքային հացահատիկ՝ 17 միլիոն տոննայով ավելի, քան 1913 թվականին, 2 միլիոն 700 հազար տոննա հումք բամբակ, երեք և կես անգամ ավելի, քան 1913 թվականին։



Տնտեսության սոցիալիստական սիստեմը հնարավորություն տվեց պատերազմի հենց սկզբից մեր երկրի էկոնոմիկան արագորեն վերակառուցելու ռազմական ձևով, արդյունաբերությունը վերաբազավորելու նոր վայրերում և կատարելու ռազմաճակատի պահանջները։

Մեր երկրի բանվոր դասակարգի, սովետական ինտելիգենցիայի անձնազոհ աշխատանքի շնորհիվ գործարաններից անընդհատ դեպի ռազմաճակատ էին հոսում անհրաժեշտ քանակով զենք և զինամթերք։ Պատերազմի տարիներին սովետական ավիացիայի և հրետանու հզորությունն աճեց 5 անգամ, տանկերինը՝ 15 անգամ։

Պատերազմի վերջին երեք տարում մեր տանկային արդյունաբերությունը միջին հաշվով տարեկան արտադրում էր ավելի քան 30 հազար տանկ, ավիացիոն արդյունաբերությունը՝ 40 հազար ինքնաթիռ, հրետանային արդյունաբերությունը՝ տարբեր տրամաչափի մոտ 120 հազար հրանոթ, 450 հազար ձեռքի և հաստոցավոր գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրացան, մոտ 2 միլիոն ավտոմատ. ականանետային արդյունաբերությունը 1942-1944 թվականների ժամանա-

կամբիջյում տարեկան արտադրում էր 100 հազար ականանետ։ Միայն 1944 թվականին արտադրվեց ավելի քան 240 միլիոն արկ, ռումբ ու ական և 7 միլիարդ 400 միլիոն փամփուշտ։

Եթե 1914 թվականին՝ առաջին համաշխարհային պատերազմի սկզբին Ռուսաստանն ուներ 7030 հրանոթ, իսկ պատերազմի վերջին՝ 14 հազար հրանոթ, ապա միայն Ստալինի անվան հրետանային այն գործարանը, որի դիրեկտորն է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Յոլյանը, Հայրենական պատերազմի ընթացքում ավեց 100 հազար հրանոթ։

Ռազմական տեխնիկայով և զինամթերքով այսպիսի հագեցվածության շնորհիվ ռազմաճակատի որոշ հատվածներում պատերազմի վճռական մոմենտներին մեկ կիլոմետրի վրա թնդանոթների քանակը հասնում էր 250-300-ի, իսկ երբեմն նույնիսկ 350-ի։ Այս հզոր տեխնիկայի գործադրումով Սովետական Բանակը կատաղի մարտերում ջախջախեց ու ոչնչացրեց մինչև ատամները զինված հիտլերյան բանակները, և ամբողջ աշխարհը փրկեց ֆաշիստական ստրկության սպառնալիքից։



Պատերազմի տարիներին փայլուն կերպով դրսևորվեց մեր կոլխոզային կարգերի կենսունակությունը։ Չնայած թշնամու կողմից երկրի կարևորագույն գյուղատնտեսական շրջանների ժամանակավոր օկուպացիային և պատերազմի հետևանքով ստեղծված այլ դժվարություններին, մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը, սովետական կանայք և հայրենասեր երիտասարդությունը հերոսական աշխատանք էին կատարում սոցիալիստական դաշտերում։ Այդ հայրենասիրական աշխատանքի շնորհիվ մեր Բանակն ու ժողովուրդը անընդմեջ ստանում էին անհրաժեշտ քանակությամբ կենսամթերք, արդյունաբերությունը՝ հումք։

«Մեր հաղթանակը նշանակում է, երկրորդ, որ հաղթեց մեր սովետական պետական կարգը, որ մեր սովետական բազմազգ պետությունը դիմացավ պատերազմի բոլոր փորձություններին և ապացուցեց իր կենսունակությունը» (Ստալին)։

Սովետական պետության բազմազգ բնույթը մեր թշնամիներին միշտ թվացել է իբրև մեր երկրի թուլության նշան։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները հարձակվելով մեր երկրի վրա, հույս ունեին, թե առաջին իսկ

լուրջ հարվածից և Կարմիր Բանակի առաջին անհաջողություններից հետո Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը կքայքայվի։

Պատերազմը հօդս ցնդեցրեց գերմանական ֆաշիստների այդ ավանտյուրիստական ենթադրությունները։ Պատերազմի ընթացքում է՛լ ավելի կոփվեց ու ամրապնդվեց Սովետական Միության ժողովուրդների մեծ բարեկամությունը, որովհետև մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդներին միավորում է կենսատու սովետական հայրենասիրությունը, որի մեջ ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային տրադիցիաներն ու Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը։ Սովետական հայրենասիրությունը բոլոր ազգերին ու ժողովուրդներին ոչ թե անջատում, այլ համախմբում է միասնական ընտանիքի մեջ։

Սովետական հայրենասիրության վեհ գաղափարով ոգեշնչված, Հայրենական պատերազմի տարիներին ռազմաճակատներում մարտնչում և թիկունքում անձնվիրաբար աշխատում էին մեր Հայրենիքի բոլոր ազգությունների աշխատավորները՝ ռուսները և ուկրաինացիները, տաջիկները և ղազախնե-



րը, հայերը և վրացիները, թաթարները և մոլդավացիները, կռվելով հաղթանակը ոխերիմ թշնամու դեմ։ Հայրենական պատերազմի ընթացքում Սովետական Միության Հերոսի բարձր կոչման արժանացածների թվում կան 56 ազգությունների ներկայացուցիչներ, այդ թվում 100-ից ավելի հայեր։

Սովետական բազմազգ ժողովրդի համախմբվածությունը ռուս մեծ ժողովրդի շուրջը, նրանց եղբայրական բարեկամությունը մարտերի մեջ է՛լ ավելի ամրապնդվեց ու կոփվեց սրբազան արյամբ։ Միայն սովետական պետական սիստեմի պայմաններում, միայն հաղթանակած սոցիալիզմի երկրումն էր հնարավոր բազմազգ ժողովրդի բարոյական-քաղաքական այնպիսի կուռ միասնություն, որը հանդիսացավ մեր հաղթանակի կարևոր պայմաններից մեկը։

Մեր ժողովուրդը արյան գնով պաշտպանեց իր հարազատ իշխանությունը, որովհետև նա լավ էր հասկանում, որ եթե պահպանի սովետական իշխանությունը, ապա նրա օգնությամբ կարճ ժամանակամիջոցում կկարողանա բուժել պատերազմի ծանր վերքերը, կկարողանա վերականգնել և՛ Դնեպրոգէսը, որ նա հաջողությամբ վերականգնում է,

և՛ Դոնբասի ածխահանքերը, և՛ Ուկրաինայի կոլխոզները, և՛ իր ազգային կուլտուրայի փառավոր հուշարձանները։ Իսկ եթե նա կորցնի իր հարազատ սովետական իշխանությունը, ապա կկորցնի ամեն բան—և՛ իր ազատությունը, պատիվն ու անկախությունը, և՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի բոլոր մեծագույն նվաճումները։

Գերմանա-ֆաշիստական բանակների ջախջախումը միևնույն ժամանակ Կարմիր Բանակի հաղթանակն էր, բանակ, որը հանդիսանում է Լենինի-Ստալինի պարտիայի հարազատ զավակը, նրա աճեցրածն ու կոփածն է։

«Մեր հաղթանակը նշանակում է, երրորդ, որ հաղթեցին Սովետական զինված ուժերը, հաղթեց մեր Կարմիր Բանակը, որ Կարմիր Բանակը հերոսաբար դիմացավ պատերազմի բոլոր ձախորդություններին, գլխովին ջախջախեց մեր թշնամիների բանակները և պատերազմից դուրս եկավ հաղթող» (Ստալին)։

Պատերազմի հաղթական ավարտումը ցույց տվեց հանճարեղ զորավար, Սովետական Միության Գեներալիսիմուս Ստալինի մշակած ռազմական ստրատեգիայի գերա-



զանցությունը գերմանական ռազմական ստրատեգիայի նկատմամբ։

Ստալինի հանճարով սովետական ռազմական գիտությունը հասավ չտեսնված բարձրության։ Ստալինն իր հանճարի ուժով ճիշտ ստրատեգիա և տակտիկա թելադրեց սովետական զինված ուժերին, որով սովետական զորքերը նախ՝ ակտիվ պաշտպանողական մարտերում հյուծեցին հակառակորդի գերակշռող ուժերը և ապա անցնելով հակահարձակման՝ գլխովին ջախջախեցին ուժեղ թշնամուն ու ապահովեցին մեր փառավոր հաղթանակը։

«Այդ մեր երջանկությունն է,—ասաց ընկեր Մոլոտովը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 28-րդ տարեդարձի վերաբերյալ իր զեկուցման մեջ,—որ պատերազմի դժվարին տարիներին Կարմիր Բանակին ու սովետական ժողովրդին առաջ էր տանում Սովետական Միության իմաստուն և փորձված առաջնորդ Մեծ Ստալինը։ Գեներալիսիմուս Ստալինի անունով մեր երկրի պատմության և համաշխարհային պատմության մեջ կմտնեն մեր բանակի փառավոր հաղթանակները։ Մեծ առաջնորդ և

կազմակերպիչ Ստալինի ղեկավարությամբ մենք այժմ ձեռնամուխ ենք եղել խաղաղ շինարարության, որպեսզի հասնենք սոցիալիստական հասարակության ուժերի իսկական ծաղկման և արդարացնենք ամբողջ աշխարհում մեր բարեկամների լավագույն հույսերը»։

Հայրենական պատերազմում սովետական ժողովրդին ուղղություն տվող ղեկավար ուժը, նրա բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողը Լենինի-Ստալինի մեծ պարտիան էր, որն իր զավակներին ուղարկում էր ռազմաճակատի ամենադժվարին հատվածները, թիկունքում՝ աշխատանքի ամենածանր ու պատասխանատու բնագավառները, ուր նրանք հանդես էին գալիս որպես կազմակերպիչներ, ղեկավարներ, հերոսաբար կռվող զինվորներ, անձնազոհ աշխատանքի լավագույն օրինակ տվողներ։

Հայրենական Մեծ Պատերազմում մեր տարած հաղթանակը սովետական պետական և հասարակական սիստեմի հաղթանակն է, ժողովուրդների բարեկամության հաղթանակը, Բոլշևիկյան Պարտիայի քաղաքականության և իդեոլոգիայի հաղթանակը։



***

Երկրորդ անգամ սովետական ժողովուրդն իր մեծ Հաղթանակի տոնը նշում է ստեղծագործական եռուն աշխատանքի պայմաններում։ Սովետական մարդիկ հսկայական ոգևորությամբ ձեռնամուխ են եղել Ստալինյան նոր հնգամյա պլանի—մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման, նրա տնտեսության, գիտության և կուլտուրայի հետագա վերելքի ծրագրի կենսագործմանը։

Նոր, երջանիկ կյանքի համար մղվող պայքարը պայքար է Ստալինյան նոր հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար, արդյունաբերության արտադրանքն ավելացնելու համար, սոցիալիստական դաշտերի բերքատվությունը բարձրացնելու համար։

Հաղթանակի տոնը սովետական յուրաքանչյուր մարդու պարտավորեցնում է պայքարել մեր երկրում արդյունաբերական ապրանքների ու պարենային մթերքների առատություն ստեղծելու համար։

Միևնույն ժամանակ միշտ պետք է

հիշել ընկեր Ստալինի այն խոսքերը, որ «Ծավալելով խաղաղ սոցիալիստական շինարարությունը, մենք ոչ մի րոպե չպետք է մոռանանք միջազգային ռեակցիայի ոտնձգությունների մասին, որը սնուցանում է նոր պատերազմի պլաններ։ Անհրաժեշտ է հիշել մեծ Լենինի այն ցուցումները, որ անցնելով խաղաղ աշխատանքի, պետք է շարունակ զգաստ լինել, աչքի լույսի պես պահպանել մեր երկրի զինված ուժերը և պաշտպանունակությունը»։

ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

—o—

ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԶՐՈՒՅՑ

## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄՇԱԿՈՒՄՆ ՈՒ ԽՆԱՄՔԸ

ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի փետրվարյան պլենումի պատմական որոշումը Հայկական ՍՍՌ-ի կոլխոզնիկներն ընդունեցին որպես գյուղատնտեսության հետպատերազմյան վերելքի համար պայքարելու մարտական ծրագիր։ Այդ որոշման մեջ մատնանշված է, որ մշակվող բույսերի բարձր բերքատվությունն ապահովելու գործում, բացի հողի բարձրորակ վարից, նախացանքային և ցանքի աշխատանքների ճիշտ կազմակերպումից ու կիրառումից, խոշոր նշանակություն է տրվելու նաև ցանքերի խնամքին, մշակմանը, որը պետք է կիրառել ճիշտ, ժամանակին և լրիվ կոմպլեքսով։

Մշակվող կուլտուրաների ցանքերի խնամքը հետևյալ նպատակներն է հետապնդում.

Հեշտացնել ջրի մուտքը հողի մեջ, ինչ-

պես նաև ստեղծել ջերմային ռեժիմի լավագույն պայմաններ.

Հողի վերին շերտը միշտ փուխր վիճակում պահել, որը հեշտացնում է հողի «շնչառությունը» (գազափոխանակությունը)։ Դրա հետևանքով ավելի ինտենսիվ են տեղի ունենում հողում միկրոբիոլոգիական պրոցեսները, որը խիստ կարևոր է բույսերի զարգացման, սննդառության պայմանները լավացնելու տեսակետից.

պայքարել գյուղատնտեսությանը խոշոր վնաս հասցնող մոլախոտերի, հիվանդությունների և վնասատուների դեմ։

Սովետական Հայաստանում կան անհրաժեշտ բոլոր պայմանները մշակվող կուլտուրաների բարձր բերքատվությունն ապահովելու համար, և եթե հաճախ բարձր բերք չի ստացվում, ապա դրա հիմնական պատճառը ցածր ագրոտեխնիկան և ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջական կոմպլեքսի թերի կիրառումն է, ըստ որում այդ միջոցառումների մեջ վճռական դեր է կատարում նաև ցանքերի խնամքը։

Բարձր բերքատվության համար մղվող պայքարը բաղկացած է բազմազիսի բնույթի միջոցառումներից, որոնք կարևոր են և



պետք է կիրառվեն միասին, միաժամանակ, կոմպլեքս եղանակով, սիստեմատիկաբար, անթերի և ճիշտ ժամանակին։ Շատ կարևոր է նաև, որ այդ պայքարը անշեղորեն կիրառվի բոլոր կոլխոզներում ու սովխոզներում և բոլոր դաշտերում, այլ կերպ այդ պայքարի էֆեկտը ցածր կլինի։

Առաջավոր կոլխոզների փորձը ցույց է տալիս, որ կուլտուրաների մշակման աշխատանքներն ամենից մեծ արդյունք են տալիս, երբ նրանք կատարվում են հաշվի առնելով տեղի հողային, բուսական, կլիմայական պայմանների առանձնահատկությունները, տարածված մոլախոտերի տիպերը, հիվանդությունների և վնասատուների բնույթը և այլն։ Այդպես են վարվում բարձր բերքի վարպետները, որոնք խուսափում են շաբլոնից, այս կամ այն ագրոտեխնիկական միջոցառման մեխանիկական կիրառումից և յուրաքանչյուր առանձին դեպքում կիրառում են հողի մշակման ու ցանքերի խնամքի յուրահատուկ եղանակ։

**Հացահատիկային կուլտուրաների ցանքերի խնամքը.**—Այժմ արդեն գարնանացան հացահատիկների ցանքը համարյա ավարտվել է։ Սկսվել է ցանքերի խնամքը, որի մեջ

մանում են՝ քաղհանը, աշնանացանների գարնանային փոցխումը, ռոգումը, պարարտացումը։

Հացահատիկների ցանքերը մեզ մոտ քաղհանում են, սակայն այդ աշխատանքը հաճախ կատարում են անորակ և խիստ ուշացած։ Կոճղարմատավոր և ծլարմատավոր մոլախոտերը պոկում են ձեռքով, քաղհանած մոլախոտերը ցանքերի միջից լրիվ և ժամանակին չեն հեռացնում, իսկ այդ բոլորի հետևանքը լինում է այն, որ այդ կարևոր աշխատանքի էֆեկտիվությունը խիստ ընկնում է, բազմամյա մոլախոտերի ստորերկրյա վեգետատիվ մասերը շարունակում են աճել և է՛լ ավելի մեծացնել ցանքերի աղբոտվածությունը։ Նման դրությունից խուսափելու համար բոլոր մշակվող կուլտուրաների, այդ թվում և հացահատիկային կուլտուրաների ցանքերի քաղհանը, որի տեխնիկան շատ պարզ է ու մատչելի, պետք է կատարել որքան կարելի է վաղ, մոլախոտերի մասսայական ծլման հենց առաջին օրերին։

Այդ աշխատանքը պետք է կատարել այն հաշվով, որ հացահատիկի ցողունակալման



(«գուլպա» տալու) մոմենտին ցանքերը մոլախոտերից միանգամայն մաքուր լինեն։

Ուշ կատարած քաղհանը պակաս էֆեկտ է տալիս երկու պատճառով.

Նախ, որ ուշ քաղհանելիս հացաբույսերն արդեն խողովակ տված են լինում, որոնք տրորվելիս անհամեմատ ավելի շատ են տուժում և ուշ են կազդուրվում, քան այն դեպքում, երբ նրանք նախ քան խողովակ տալն են տրորվում, որն անխուսափելի է համատարած ցանքերի քաղհանի ժամանակ։

Երկրորդ, որ մոլախոտոտված ցանքերի ուշ քաղհանի դեպքերում բույսերը ձգվում են դեպի լույսը, ունենում են երկար և նուրբ ցողուն, որը քաղհանից հետո հեշտությամբ թեքվում, պառկում է և բերքի ուժեղ անկում է առաջացնում։

Շատ կարևոր է նաև քաղհանի ճիշտ ժամկետ ընտրելը։ Լավ արդյունք է ստացվում այն քաղհանից, որը կատարվում է անձրևից հետո, երբ դեռ հողը լավ չի չորացել։ Այդպիսի պայմաններում հնարավոր է քաղհանի միջոցով հեռացնել մոլախոտերն իրենց արմատների հետ միասին, որը շատ կարևոր է մոլախոտերի հետագա զարգացումն ու տարածումը կանխելու համար։

Քաղհանած մոլախոտերը ոչ մի դեպքում չի կարելի դաշտում կույտ անել և տեղում թողնել, որովհետև նրանց որոշ տեսակներն ընդունակություն ունեն այդպիսի պայմաններում նորից արմատակալել, նույնիսկ ծաղկել ու հասունանալ։

Կոճղարմատավոր և ծլարմատավոր մոլախոտերի քաղհանը պետք է կատարել «շղփիկներով», բատ որում այդպիսի մոլախոտերը պետք է կտրել հողի տակ և որքան հնարավոր է՝ խորը։ Բոլոր տեսակի մոլախոտերը քաղհանից հետո պետք է հավաքել՝ անասուններին տալ կամ օգտագործել սիլոսի համար։

Քաղհանի թիվը կախված է կլիմայական պայմաններից, հողամասի մոլախոտվածության աստիճանից, մոլախոտերի գլխավոր տեսակների բիոլոգիական առանձնահատկություններից։

Մաքուր դաշտերում և չոր եղանակներին հացահատիկային կուլտուրաների ցանքերը կարելի է և պետք է քաղհանել մեկ անգամ, իսկ անձրևային եղանակներին և մոլախոտերով ուժեղ վարակված հողամասերում քաղհանը պետք է կատարել երկու և նույնիսկ



երեք անգամ (դարձյալ մինչև հացահատիկների ցողունակալելը)։

Ցանքերի մեջ առանձին թփումներով զարգացող մոլախոտեր երևալու դեպքում, պետք է կանխել դրանց հետագա տարածումը, բացի սովորական քաղհանից, կազմակերպել նաև լրացուցիչ պայքար այն ժամանակ, երբ արդեն դադարել է հացահատիկային ցանքերի համատարած քաղհանը։ Բերքահավաքից հետո այդպիսի տեղերում պետք է կատարել խոր վար և մեծ խնամքով հավաքել մոլախոտերի մնացորդներն ու այրել։

Քաղհանը պարտադիր կերպով պետք է կատարել ինչպես հացահատիկների, այնպես էլ կտավհատի, սոյայի, խոտաբույսերի և այլ կուլտուրաների ցանքերում։

Մոլախոտերի դեմ պայքարելու համար արժեքավոր է նաև միջնակների վերացումը, առուների ու ճանապարհների եզրերին, միջնակներում, խամ, անմշակ թողնված հողակտորներում աճող մոլախոտերի քաղն ու հեռացնելը, նախ քան նրանց ծաղկելն ու սերմնակալելը։ Կոճղարմատավոր և ծլարմատավոր մոլախոտերը պետք է հեռացնել նրանց երևալու առաջին իսկ օրերին և այն-

քան անգամ, մինչև որ ապահովվի նրանց լրիվ ոչնչացումը։

Մոլախոտերի դեմ պայքարելու համար, հողը փուխր վիճակում պահելու և մշակվող կուլտուրաների բարձր բերքատվությունն ապահովելու ագրոտեխնիկական միջոցառումների սիստեմում քաղհանը կարևոր օղակներից մեկն է։

**Աշնանացանների գարնանային փոցխումը.**— Հացահատիկային ցանքերի խնամքի հաջորդ կարևոր աշխատանքը աշնանացանների գարնանային փոցխումն է։ Քիչ չեն այնպիսի դեպքեր, երբ փոցխումը կատարում են ուշացած, որով խոշոր չափով իջնում է այդ աշխատանքի մեծ արժեքը։ Փոցխելու նպատակն է՝ պայքարել մոլախոտերի և գլխավորապես շաքիլավոր մոլախոտերի դեմ, հավաքել և դաշտից դուրս տանել բույսերի մեռած մնացորդները, որոնք սնկային հիվանդությունների զարգացման բուն են հանդիսանում, ինչպես նաև փխրեցնել հողի երեսը։ Այդ բոլորը ավելի լավ և հաջող իրականացնելու համար փոցխումը պետք է կատարել ժամանակին՝ աշնանացան հացահատիկի աճման պրոցեսն սկսելուց 4—5 օր անց, ըստ որում, ո՛չ մի դեպքում



չի կարելի փոցխել այն ժամանակ, երբ հողը դեռ լավ չի չորացել և փոցխի ատամները ցխափոցխ են կատարում։ Թույլ աճեցողություն ունեցող աշնանացանի փոցխումը կարելի է և պետք է մի քանի օր ուշ կատարել, այլ կերպ ցորենը կարող է տուժել։ Փոցխումը պիտի կատարել շարքերին հակառակ ուղղությամբ՝ ուղղահայաց կամ շեղակի, որպեսզի փոցխի ատամները բույսերին մեծ վնաս չպատճառեն։ Փոցխել կարելի է 1—2 անգամ։ Փոցխումն ավելի լավ է կատարել միաշար երկաթյա ատամներ ունեցող փոցխերով։

**Ցանքերի ոռոգումը.**— Ցանքերի խնամքի կարևոր աշխատանքներից մեկն էլ ոռոգումն է։ Ջուրը հզոր միջոց է թե՛ հացահատիկների և թե՛ այլ կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար։ Իբրև ընդհանուր երևույթ, յուրաքանչյուր անգամ բույսերը պետք է ջրել այն ժամանակ, երբ դրա կարիքը կզգացվի, իսկ որոշել այդ կարիքը՝ դժվար չէ, հենց բույսերի արտաքին տեսքից։ Ջրի պակասության դեպքում հացահատիկային կուլտուրաների ցանքերը պետք է ջրել գոնե երեք անգամ՝ թփակալման, հասկակալման և հատիկները լցվելու

(«ղանավի») ժամանակ։ Ջուրը հողի վրա պետք է բաց թողնել դանդաղ և փոքր հոսանքով՝ ողողում չառաջացնելու և հողի համասարաչափ խոնավացում կատարելու համար։

Կարևոր է նշել նաև ոռոգող ջրի պրոֆիլակտիկայի կարևոր դերը։ Ջրի միջոցով մոլախոտերի սերմերն առատորեն մեկ դաշտից մի ուրիշ դաշտ են փոխադրվում և վարակում նոր հողամասեր։ Այդ բանի առաջն առնելու համար, թե՛ ծլաջրի և թե՛ հետագա ոռոգումների ժամանակ անհրաժեշտ է ջուրը նախ բաց թողնել իզոլացիոն ցանցապատ արկղի միջով, որի շնորհիվ մոլախոտերի խոշոր սերմերը մնում են ցանցի վրա և ոռոգումը կատարվում է մաքրված ջրով։

**Սնուցումը.**— Հացահատիկային կուլտուրաների բարձր բերքատվությունն ապահովելու գործում խոշոր նշանակություն ունի նաև սնուցում տալը, որի համար հանքային պարարտանյութերից բացի, լայնորեն պետք է օգտագործել նաև գոմաղբը, խառնաղբը, մոխիրը և բոլոր թափուկները։ Եթե այդ լրացուցիչ պարարտացումը տրվում է չոր վիճակում և ոչ թե ջրի հետ միասին



ապա դրանց ծածկումը պետք է կատարել փոցխելու միջոցով։ Ոռոգվող հողամասերում սնուցելուց հետո ցանքերը պետք է ջրել։ Տրվող պարարտանյութերի դոզան որոշելիս պետք է ելնել ագրոկանոններով նախատեսված նորմաներից։

**Շաքարի ճակնդեղի ցանքերի խնամքը.**— Հայաստանի ճակնդեղացան շրջաններում նորմալ պայմաններում և խոնավությամբ ապահովված հողերում ցանքից մի քանի օր հետո սկսում են երևալ ճակնդեղի առաջին ծիլերը, իսկ դրանից 2-3 օր հետո տեղի է ունենում ճակնդեղի մասսայական ծլումը։ Ահա հենց այդ ժամանակ, ճակնդեղի մասսայական ծիլերը երևալուն պես, պետք է կատարել շաքարի ճակնդեղի ցանքերի մակերեսային փխրեցում (շարովկա) 3—4 սմ. խորությամբ, ՏԿՍ կուլտիվատորներով, կամ ձեռքի չափաններով։ Այդ աշխատանքը պետք է ավարտել 3-4 բանվորական օրում։ Շարովկայի աշխատանքին զուգընթաց անհրաժեշտ է թրջած սերմեր ցանել այն տեղերը, ուր ճակնդեղը չի ծլել և մնացել է թեկուզ փոքր բացուտ։

Շաքարի ճակնդեղի խնամքի աշխատանքների սիստեմում կարևորագույն նշանակություն ունեն նոսրացումն ու սնուցումը։

Սխալ է այն կարծիքը, թե երկարակնճիթով վարակված հողերում նոսրացումը պետք է ուշ կատարել։ Եղած դիտողությունները և փորձերը ցույց են տալիս, որ նոսրացումն ուշացնելու դեպքում ճակնդեղի բույսերը խիստ ճնշվում և վատ են զարգանում, իսկ թույլ զարգացած բույսերը ճակնդեղի երկարակնճիթով ավելի մեծ չափով են վնասվում, քան լավ զարգացածները։ Ուստի ճակնդեղի առաջին նոսրացումը պետք է կատարել բույսերի առաջին իսկական զույգ տերևները երևալուն պես։ Նոսրացման աշխատանքը պետք է սկսել այն հաշվով, որ այն ավարտվի մեկ զույգ տերևների շրջանից ոչ ուշ։ Այն դաշտերում, որոնք աչքի են ընկնում առողջ և համահավասար բուսածածկույթով, նոսրացումից առաջ պետք է կատարել փոցխավորում (բուկետիրովկա), որին զուգընթաց ձեռքով անհրաժեշտ է հեռացնել բոլոր թույլ բույսերը, թողնելով փնջի մեջտեղում մեկ բույս։ Առաջին նոսրացումից 8-12 օր հետո պետք է կատարել ճակնդեղի ցանքերի ստուգումը։ Առաջին նոսրացման ժամանակ բույսը բույսից պետք է թողնել 18-20 սմ. հեռավորության վրա, իսկ ստուգման ժամանակ հեռացնել բոլոր ավելորդ և նոսրացումից հետո նոր ծլած բույսերը։



Թե նոսրացման և թե ստուգման ժամանակ պարտադիր կարգով պետք է հեռացնել թույլ զարգացած, հիվանդ և վնասված բույսերը և թողնել բացառապես ուժեղ զարգացած և առողջ բույսերը։

Ճակնդեղի ցանքերի խնամքի սիստեմում հաջորդ կարևոր մոմենտը փխրեցման և քաղհանի աշխատանքների նոսրացման և ոռոգման աշխատանքներին զուգակցելն է։ Ճակնդեղի ցանքերի փխրեցման թիվը, խորությունը և ժամկետները պետք է սահմանել ելնելով յուրաքանչյուր հողամասի խոնավության աստիճանից, ճակնդեղի վիճակից, ցանքերի մոլախոտվածությունից և այլն։ Իբրև պարտադիր կանոն առաջին նոսրացումից հետո պետք է կատարել 6-8 սմ. խորությամբ փխրեցում, որը պետք է ավարտել 4-5 օրում։ Դրանից մոտ 8-12 օր անց ճակնդեղի ցանքերի ստուգումից անմիջապես հետո դաշտը պետք է փխրեցնել տրակտորային կուլտիվատորներով 6—8 սմ. խորությամբ։ Այդ աշխատանքը պետք է ավարտել 4-5 բանվորական օրում։ Դրանից հետո մինչև բերքահավաքը անհրաժեշտ է կատարել ևս մոտ 5-6 լրացուցիչ փխրեցում և քաղհան։ Այդ փխրեցումները պետք է կատարել ջրելուց հետո, հողամասի քեչի ժա-

մանավ և վերջացնել 1-2 օրում: Փխրեցման աշխատանքները միջշարքային տարածություններում տրակտորահարմար հողամասերում պետք է կատարել տրակտորաքարշ, իսկ մնացած հողերում ձիաքարշ կուլտիվատորներով: Շարքերում փխրեցումը պետք է կատարել բեթմեններով—չափաններով: Ճակնդեղի ցանքերի քաղհանն ու կուլտիվացիան պետք է կատարել այն հաշվով, որ մինչև վեգետացիայի վերջը հողը միշտ լինի փուխր և մոլախոտերից միանգամայն մաքուր վիճակում:

Այս աշխատանքներից բացի, ճակնդեղի ոռոգումը պետք է կատարել ըստ բույսերի պահանջի: Ջուրը պետք է բաց թողնել բարակ հոսանքով, որպեսզի արտի խոնավացումը կատարվի խոր և հավասարապես: Ոռոգումը պետք է կատարել ակոսներով: Յուրաքանչյուր հաջորդ վեգետացիոն ջուր պետք է տալ նախորդ վեգետացիոն ջրից 12—15 օր հետո: Մինչև վեգետացիայի վերջը ճակնդեղը պետք է ջրել մոտ 5—6 անգամ:

Շաքարի ճակնդեղի աճման ընթացքում պետք է տալ նաև օժանդակ սնուցում: Առաջին սնուցումը պետք է կատարել սածրման աշխատանքներին զուգընթաց, իսկ երկրորդ սնուցումը՝ երկրորդ փխրեցման նախօրյա-



կին: Սնուցումը պետք է կատարել դաշտը ջրելու նախօրյակին: Սնուցման համար պետք է օգտագործել թռչունի աղբը (նախապես մանրացրած վիճակում), գոմաղբաջուր, միզաջուր, հանքային պարարտանյութերից՝ ամոնիում սուլֆատ, սուպերֆոսֆատ, կալիական աղ: Տեղական պարարտանյութերով սնուցումը պետք է կատարել ջրի հետ միասին, իսկ հանքայինը տալ շարքում փխրեցման նախօրյակին, որից հետո կատարել խոր փխրեցում և ապա ոռոգում:

Ճակնդեղի ցանքից սկսած մինչև նրա բերքահավաքը, օղակավարների միջոցով պետք է կազմակերպել ամենօրյա հսկողություն վնասատուների և հիվանդությունների նկատմամբ և այդպիսիք հայտաբերելու դեպքում անմիջապես հայտնել շրջանային ագրոպերսոնալին, և առանց ուշացնելու սկսել պայքարը դրանց դեմ:

Գարնանը նախ քան օկնոգինայի թրթուրների երկրորդ և երրորդ հասակի հանելը և դրանց ցրվելը պետք է ճակնդեղի դաշտերում և դրանց շրջակայքում մեխանիկորեն (տրորելու միջոցով) ոչնչացնել օկնոգինայի թրթուրների բոլոր խմբերը:

Ճակնդեղի ցանքերում երկարակնճիթ, կարադրինա, սովկա և այլ վնասատուներ ու

հիվանդություններ երևալու դեպքում պետք է առանց ուշացնելու կազմակերպել պայքար դրանց դեմ քիմիական ու մեխանիկական մեթոդներով։

Վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի բոլոր աշխատանքները պետք է կատարել ագրոպերսոնալի ղեկավարությամբ, այդ մասին գոյություն ունեցող հրահանգների համաձայն։

**Կարտոֆիլի ցանքերի խնամքը.**— Կարտոֆիլի բույսը ամբողջ վեգետացիայի ընթացքում անընդհատ պահանջում է ժամանակին և բարձրորակ խնամք։ Դա առաջին հերթին բացատրվում է նրանով, որ կարտոֆիլի ընձյուղներն ու պալարները, որպես ստորերկրյա օրգաններ, ավելի առատ ու հաջող են կազմակերպվում փուխր և մոլախոտերից ազատ հողերում։ Այստեղից էլ պարզ է այն մեծ ազդեցությունը, որ ունենում է ցանքերի լավ խնամքը կարտոֆիլի բերքի վրա։ Այս կապակցությամբ կարևոր ենք համարում նշել այն վճռական դերը, որ ունենում է մեխանիզացիան, որը բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, միաժամանակ հնարավորություն է տալիս ժամանակին և բարձրորակ կատարել



կարտոֆիլի խնամքի կարևորագույն պրոցեսները։

Հայաստանի բարձր լեռնային շրջանների անջրդի պայմաններում կարտոֆիլը ծլում է ցանքից մոտ 25-35 օր հետո, իսկ մինչ այդ համարյա բոլոր տեսակի հողերում արդեն գոյանում է կեղև և բացի այդ մասսայորեն ծլած են լինում մոլախոտերը։ Ահա հենց այդ պատճառով ծլելուց առաջ և ծլելուց անմիջապես հետո անհրաժեշտ է կարտոֆիլի ցանքերը փոցխել «զիգզագ» փոցխով՝ գոյացած կեղևը փշրելու, հողի աէրացիան ուժեղացնելու և մոլախոտերի դեմ պայքարելու համար։ Այդ աշխատանքն առանձնապես մեծ արդյունք տալիս է վաղ ցանքերում, որտեղ կարտոֆիլի աճը դանդաղ է ընթանում հողի ցածր ջերմության պատճառով։

Երբ կարտոֆիլի բույսերն այնքան են աճել, որ կարող են վնասվել փոցխի շրջանակից, բայց միաժամանակ դեռ այնքան չեն բարձրացել, որ կարելի լինի բուգը լցնել, անհրաժեշտ է ցանքը քաղհանել ու փխրեցնել կուլտիվատորներով կամ հողուրագներով։ Դրանից կարճ ժամանակ անց նորից մասսայորեն սկսում են ծլել մոլախոտերը, ուստի երբ կարտոֆիլի բույսը 15—18 սանտիմետր բարձրության է հասել, պետք է կա-

տարել առաջին բուքլիցը 8—10 սմ. խորությամբ այն բոլոր շրջաններում ու պայմաններում, որտեղ մթնոլորտային տեղումներն առատ են և կարտոֆիլը ջրով ապահովված է անհրաժեշտ քանակությամբ։ Մնացած անկայուն խոնավություն ունեցող շրջաններում բուքլիցը, մեծացնելով հողի մակերեսը և նպաստելով ջրի ուժեղ գոլորշիացմանը, կարող է տալ բացասական հետևանք։ Ուստի բուքլիցի փոխարեն այդպիսի պայմաններում պետք է կատարել կարտոֆիլի ցանքերի փխրեցում թաթավոր կուլտիվատորներով, հողուրագներով կամ որևէ այլ գործիքով։ Վեգետացիայի ընթացքում այս աշխատանքները պետք է կատարել 4 անգամ և այն հաշվով, որ ցանված հողերը մշտապես լինեն փուխր և մոլախոտերից միանգամայն մաքուր վիճակում։

Բոլոր դեպքերում շարքերի մեջ բուքլիցի կամ կուլտիվացիայի հետ միասին ձեռքի հողուրագներով հողի փխրեցում և մոլախոտերի ոչնչացում պետք է կատարել նաև շարքերում, ըստ որում այս աշխատանքը պետք է նախորդի բուքլիցին ու կուլտիվացիային։

Խոնավությամբ ապահովված և ջրովի պայմաններում երկրորդ բուքլիցը պետք է կատարել առաջին բուքլիցից հետո մոտ 12—15



օր հետո, որը պետք է անպայմանորեն վերջացնել նախ քան կարտոֆիլի ծաղկումը։ Միանգամայն ակներև է, որ նմանօրինակ պայմաններում ևս վեգետացիայի ընթացքում շարքերի մեջ կատարվող բուքլիցը կամ կուլտիվացիան, դրա հետ միասին շարքերում ձեռքի հողուրագներով կատարվող փխրեցումը, մոլախոտերի ոչնչացումը պետք է կատարել այնքան անգամ, և այն հաշվով, որ ցանքերը մշտապես լինեն մաքուր ու մոլախոտերից զերծ։

Իբրև ընդհանուր կանոն կարտոֆիլի ցանքերի խնամքի աշխատանքները պետք է դադարեցնել շարքերը լցնելուց հետո, նախ այն պատճառով, որ դրա կարիքն այլևս չի զգացվում և երկրորդ, որ կարտոֆիլի թփերը կարող են կոտրվել-վնասվել, որը բացասաբար է անդրադառնում բերքատվության վրա։

Ջրովի պայմաններում կարտոֆիլը պետք է ջրել 4—5 անգամ՝ ըստ բույսերի պահանջի։ Ջրել ակոսներով և բարակ հոսանքով։ Յուրաքանչյուր անգամ ջրելուց հետո հողի քեշի ժամանակ միջշարքային տարածությունները պետք է փխրեցնել կուլտիվացիայի միջոցով։

Մեր Ռեսպուբլիկայի լեռնային շրջաններում կարտոֆիլի հիվանդություններից հատ-

*կապես մեծ վնաս է պատճառում ֆիտոֆտորան։ Առանձին խոնավ տարիներում այս հիվանդության պատճառած վնասը մեծ չափերի է հասնում։ Այս անկի դեմ պայքարում են մեկ տոկոսանոց բորդոյան հեղուկով, ըստ որում սրսկումը պետք է կատարել հուլիսի առաջին կեսից սկսած։*

*Առանձին շրջաններում կարտոֆիլի ցանքերը տուժում են նաև «սև ոտիկ», «ֆուզարիոզ», «օղակային փթում», բակտերիալ և այլ անկային հիվանդություններից։*

*«Սև ոտիկով» հիվանդ բույսերի ցողունի հիմքը հողում սևանում և նեխում է, որի հետևանքով թուփը հողից հեշտությամբ դուրս է քաշվում։ Սովորաբար հիվանդ թփերը նվազ են լինում, շուտ են դեղնում և վաղաժամ չորանում են։*

*«Ֆուզարիոզով» և «Թառամումով» հիվանդ բույսերի պալարները ամբողջովին նեխում են։ Այս հիվանդությունը հաճախ պատահում է ծանր կավային և գերխոնավ հողերում։*

*Դրանց դեմ պայքարի հիմնական միջոցն է՝ վարակված թփերն ու հողում գտնվող վարակված պալարները արմատախիլ անելը և այդ բոլորն այրելը։*



*Վիրուսով հիվանդ բույսերը լինում են գաճաճ և թույլ զարգացած։ Այս հիվանդությամբ վարակված բույսերի արտաքին տեսքը մեծ մասամբ այլանդակված է լինում (կնճռոտված, գանգրոտ և այլն)։ Վիրուսով հիվանդ պալարներից ստացվում են նվազ բույսեր, որոնց տերևները մեծ մասամբ ոլորված են ու փխրուն։*

*Հիվանդությունների դեմ պայքարելու համար անհրաժեշտ է ճշտորեն կիրառել այն բոլոր միջոցառումները, որոնք նշված են ագրոկանոններում։*

Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

Պրոֆեսոր—դոկտոր, գիտ. վաստ. գործիչ

—○—

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

1945 թ. մայիսի 2.— *Կարմիր Բանակի զորամասերը ամբողջովին գրավեցին Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը։*

1818 թ. մայիսի 5.— *Ծնվեց համաշխարհային պրոլետարիատի ուսուցիչ և առաջնորդ Կարլ Մարքսը։*

1912 թ. մայիսի 5.— *Պետերբուրգում լույս տեսավ բոլշևիկյան մասսայական թերթ «Պրավդա»-ի առաջին համարը։*

*Բոլշևիկյան Մամուլի օրը։*

1941 թ. մայիսի 6.— *ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը ընկեր Ի. Վ. Ստալինին ՍՍՌՄ Ժողկոմսովետի Նախագահ նշանակելու մասին։*

1895 թ. մայիսի 7.— *Ռուս ականավոր ֆիզիկոս Ա. Ս. Պոպովի հայտնագործած աշխարհում առաջին ռադիոընդունիչի հրապարակային ցուցադրումը։*

*Ռադիոյի օրը։*

1945 թ. մայիսի 8.— *Բեռլինում ստորագրվեց գերմանական զինված ուժերի անվերապահ կապիտուլյացիայի ակտը։*

1945 թ. մայիսի 9.— *Ընկեր Ստալինի դիմումը ժողովրդին։*

*Հաղթանակի Տոնը։*



1945 թ. մայիսի 9.— *Կարմիր Բանակի զորամասերը ազատագրեցին գերմանական զավթիչներից Չեխոսլովակիայի մայրաքաղաք Պրագան։*

1945 թ. մայիսի 10.— *Մեռավ Բոլշևիկյան Պարտիայի ականավոր գործիչ Ա. Ս. Շչերբակովը։*

1919 թ. մայիսի 10.— *Կոմունիստական առաջին շաբաթօրյակը Մոսկվա—Կազան երկաթուղում։*

1907 թ. մայիսի 14.— *ՌՍԴԲՊ V համագումարի բացումը։*

1920 թ. մայիսի 14.— *Արգինեի ձորում դաշնակ բանդիտների դնդակից հերոսական մահով ընկավ Հայաստանի քաղաքացիական կռիվների հերոս, բոլշևիկ Ղուկաս Ղուկասյանը։*

1935 թ. մայիսի 15.— *Մոսկվայի մետրոպոլիտենի բացումը։*

1936 թ. մայիսի 15.— *Վ. Ի. Լենինի Կենտրոնական Թանգարանի բացումը Մոսկվայում։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

